ԸՆԹԱՑՔ
ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԵՒ ԿՐԹՈՒԹԵԱՆ

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ ԵՒ ԻՒՐ ՇՐՋԱԿԱՅԻՑ

ՅԱՏԱԿԱԳԻԾ ՊԱՏԿԵՐՈՎ ՎՈՍՓՈՐԻ

ՅԱՒԵԼՈՒԱԾ
Կ. Պոլսոյ խանութներուն ընդհանուր ցուցակը

ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ու ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՀԱՄԱՐ

Աշխատասիրեաց
Յ. Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՄԱՆՈՒԷԼ ԱՐՏԻԹ
Տնօրէնութիւն Սահակ Նիկողոսեան
— 1887 —

ԸՆԹԱՑՔ
ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԵՒ ԿՐԹՈՒԹԵԱՆ

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ ԵՒ ԻՒՐ ՇՐՋԱԿԱՑԻՑ

ՅԱՏԱԿԱԳԻԾ ՊԱՏԿԵՐՈՎ ՎՈՍՓՈՐԻ

ՅԱՒԵԼՈՒԱԾ

Կ. Պօլսոյ խաներուն ընդհանուր ցուցակը

ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ԵՒ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՀԱՄԱՐ

Աշխատասիրեաց

Յ. Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ



Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՄԱՆՈՒԷԼ ԱՐՏԻԹ
Տնօրէնութիւն Սահակ Նիկողոսեան
— 1887 —

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

—

Արդի մանկավարժութեան հական պահանջում-
ներէն մին ալ է Աշխարհագրութեան ուսումը սկսիլ
Տեղագրութենէ, այսինքն բնական և քաղաքա-
կան դրից նկարագրութենէն այն քաղքին կամ
գիւղին՝ որուն մէջ կ'ապրի մանուկ ուսանողը։ Տա-
րօրինակ, անբնական և միանգամայն ցաւալի է
տեսնել մեր Հայ վարժարանաց մէջ հարիւրաւոր
հազարաւոր անմեղ մանուկներ, որոնք՝ ի վնաս ի-
րենց մտաւոր կարողութեանց՝ ամիսներով և տա-
րիներով ի բերան կ'ուսանին հեռաւոր երկիրներու
աշխարհագրական խրթին և անպէտ անուանց ցու-
ցակներ, առանց գէթ մի յստակ գաղափար ըն-
դունած լինելու այն քաղաքի կամ գիւղի, նոյն
իսկ թաղի մասին, որուն մէջ ծնած են և կ'ապ-
րին։ Ուսուցման այդօրինակ հակամանկավարժա-
կանութիւն մը՝ ոչ միայն կը տաղտկացնէ զա-
շակերտը, այլ և ուսումը ատելի կը կացուցանէ
նմա։ Իւրաքանչիւր տարի, մեր ազգային վարժա-
րաններէն հարիւրաւոր աշակերտներ կը մեկնին և
կը մտնեն կենաց ասպարէզը։ Եթէ դոցա բացար-
ձակ մեծամասնութիւնը՝ ինքզինքը դպրոցի սեմէն
դուրս նետելէ յետոյ՝ այլ եւս գրքի երես անգամ
տեսնել չը փափաքիր և մեկնման յաջորդ օրն իսկ
կը վազէ գրավաճառաց իւր դպրոցական գրքերն
աժան գնով մը վաճառելու և միանգամ ընդ միշտ

ազատելու այդ անախորժ ընկերներէն, պատճառը՝ ըստ մեզ՝ մեր վարժարանաց մէջ ի գործ դրուող ուսուցման անբնական եղանակներու պէտք է վերագրել, վասն զի այդ եղանակներով ո՛չ միայն ընթերցանութեան և ուսման ճաշակը, ինչպէս նաեւ ինքնակրթութեան զարգանալու փափաքը չը ներշնչուիր մանկան, այլ և՝ ինչպէս ըսինք՝ տաղտկացուցիչ և վնասակար տուայտանք մը կը դառնայ ուսումը, և մանկան մէջ այն համոզումը կը գոյանայ թէ՝ ուսումը և վարժարանը ուրիշ բաներ չեն, այլ զմանկտին՝ բնաւպէս անհանդարտ՝ պատժելու և ի լռութիւն և յանշարժութիւն դատապարտելու համար սահմանուած զգաստարաններ: Այս թիւր համոզումն է դարձեալ պատճառը որ աշակերտք յաճախ անվստահ և անհամակիր աչօք կը նային իրենց ուսուցչաց, և դաստիարակաց, և նոցա մէկ վայրկենի բացակայութենէն իսկ կը ջանան օգուտ քաղել չարութիւններ գործելու համար:

Երկայն կը լինի այստեղ մի առ մի թուել՝ մեր ազգային վարժարանաց մէջ տիրող դաստիարակութեան և կրթութեան յոռի դրութեան վատ հետեւանքները. այդ կը թողունք ուրիշ յարմար առթի: Կ՚ըսենք միայն որ ժամանակ է այլ եւս՝ վանելու մեր վարժարաններէն ամէն ինչ որ հակամանկավարժական է, և ընդունելու արդի մանկավարժութեան կենսաբեր սկզբունքները: Մենք մեզ համար նպատակ ընտրած ենք մերովսանն օժանդակել այդ ամենակարեւոր ձեռնարկին՝ հետզհետէ նուիրելով Ազգին՝ եւրոպական արդի մանկավար-

ժութեան օրինաց և սկզբանց համաձայն պատրաստուած նորանոր դասագրքեր։ Մեր արդէն հրատարակած մի քանի դասագրքերու գտած ընդունելութենէն քաջալերեալ, այս անգամ ի լոյս կ՚ընծայեմք ահա «Կոստանդնուպօլսոյ և իւր շրջակայից տեղագրութիւնն» եւս, մեր սկսած Դաստիարակութեան եւ Կրթութեան ընթացքն հետզհետէ ամբողջացնելու մտադրութիւնն միշտ պահելով ի մեզ։

Տարակոյս չը կայ որ ներկայ դասագիրքը մայրաքաղաքիս վարժարանաց համար է միայն։ Գաւառական վարժարանաց մէջ հարկ չը կայ այդքան մանրամասնութեամբ ուսուցանել Կոստանդնուպօլիսը, այլ՝ փոխարէն՝ նոյնքան մանրամասնութեամբ պէտք է ուսուցանել այն քաղաքը կամ գիւղը որուն մէջ կ՚ապրին ուսանողք։ Սոցա համար կը բաւէ մայրաքաղաքիս մասին համառօտ ծանօթութիւն մը միայն։ Չմոռնանք նաեւ ըսել թէ Պօլսոյ վարժարանաց մէջ ուսուցիչն ի ձեռին պէտք է ունենայ մայրաքաղաքիս և շրջակայից յատակագիծըն, որ պատրաստ կը վաճառի դիւրագնի։ Առանց այն յատակագծին, այս դասագիրքն չ՚է կարող լիովին համապատասխանել իւր նպատակին։

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

## ԵՒ

## ԻՒՐ ՇՐՋԱԿԱՅԻՑ

---

## ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

### ԵՐԵՔ ԳԼԽԱՒՈՐ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ

Կոստանդնուպոլիս, որ կը կոչուի նաեւ պարզապէս Պոլիս, Վոսփորի նեղուցին վրայ և Մարմարա ծովուն բերանը հրաշալի կերպով կանգնուած քաղաք մ'է, որ իւր գեղեցիկ դիրքով կը գերազանցէ աշխարհի բոլոր քաղաքները։

Ունի 860,000 բնակիչ, որոց 374,000ը Մահմետական են, 152,000ը՝ Յոյն, 150,000ը՝ Հայ, 44,000ը՝ Հրեայ, և 140,000ը՝ այլ և այլք։

Վոսփոր՝ Եւրոպիոյ և Ասիոյ մէջտեղ ծովու նեղ անցք մ'է, որ կը կոչուի նաեւ Կոստանդնուպոլսոյ նեղուց, և որուն եզերաց վրայ գեղեցիկ գիւղեր հիանալի տեսարան մը կը ներկայացը-

նէն ։ Վոսփոր իրարմէ կը զատէ երկու ծովեր, Սեւ և Մարմարա ծովերը ։

Իսկ Ոսկեղջիւրն՝ Վոսփորի ներքին եւրոպական եզերաց վրայ ջրանցք մ'է, որ Ղալաթիոյ և Բերայի արուարձանները կը բաժնէ բուն քաղաքէն, և կը կազմէ ընդարձակ նաւահանգիստ մ'որ ունի 1600 մէթր լայնութիւն և 6800 մէթր երկայնութիւն ։

Պօլիս երեք մասերու կը բաժնուի ․ Ա․ Բուն քաղաքը որ է Ստամպօլ, Բ․ Ղալաթիոյ և Բերայի արուարձանները՝ Ոսկեղջիւրին և Վոսփորի եւրոպական եզերաց վրայ գտնուած գիւղերով, Գ․ Իւսկիւտար, Գատը գիւղ և Վոսփորի ասիական եզերաց վրայ գտնուող գիւղերը ։

---

# 1․ Կ․ ՊՕԼԻՍ ԿԱՄ ՍՏԱՄՊՕԼ

Բուն Պօլիս, որ կը կոչուի նաեւ Ստամպօլ, ունի անկանոն եռանկեան(1) մը ձեւն, որուն խարիսխը դէպ յ'արեւմուտք՝ դաշտե-

[1] Եռանկեան ի՛նչ լինելն ուսուցիչը բացատրելու է, եթէ չ'են գիտեր աշակերտք ․ եթէ գիտեն յիշեցնելու է ։

րուն վրայ կը նայի. Հարաւային և արեւելեան կողմերն ողողուած են Մարմարա ծովէն, և հիւսիսային կողմը՝ Ոսկեղջիւրէն։ Եռանկեան հիւսիսային արեւելեան ծայրն կամ գագաթն, որ Սարայ պուրնու կը կոչուի, կը նայի դէպ ի Վոսփոր և Իւսկիւտար։

Ստամպօլ եօթը բլուրներու վրայ շինուած է։ Այս բլուրներէն վեցը քաղքին հիւսիսային կողմը կը բարձրանան դրեթէ մէկ կարգի վրայ և իրարմէ կը զատուին հինգ ձորերով։ Քաղաքին հարաւային կողմը առանձնացած է եօթներորդ բլուրը, զոր կը շրջապատեն Եէտի-գուլէի բերդը և առու մ'որ արեւմտեան կողմէն քաղաք կը մտնէ և Վլանկա-Պօսթանի մօտ ծովը կը թափի։

---

## Կ. ՊՈԼՍՈՅ ՆՇԱՆԱՒՈՐ ՇԷՆՔԵՐԸ

Պօլսոյ արեւելեան ծայրը՝ առաջին բլուրին վրայ՝ կը գտնուի Պալատ (Սարայ) կոչուած ընդարձակ տարածութեամբ գետինը, որ մեծ պարսպով մը շրջապատուած է և նշանաւոր է իր հին ու երեւելի շինուածքներովը։ Պալատան մեծ դուռը Այա Սօֆիա կոչ-

ուած մզկիթին կողմն է և կը կոչուի Պապը-Հիւմայուն ։

Այս դրան դիմաց, քիչ մ'անդին, սպիտակ մարմարիոնէ քառակուսի և գեղեցիկ շինուած է Ահմէտ Գ.ի չէշմէսի, որոյ չորս անկիւնները բարձրացած են մէյմէկ վանդակապատ փոքրիկ քէօշք, իսկ չորս կողմերուն կամ երեսներուն վրայ կան մէյմէկ ծորակ (մուսլուխ)՝ զետեղուած առանձին կամարներու տակ, որոց իւրաքանչիւրին երկու կողմերը մէյմէկ գեղեցիկ խորշեր բացուած են ։ Ամբողջ աղբիւրը զարդարուած է նկարներով, ոսկեայ դրուագներով (եազըլը) որոնք արաբական ըսքանչելի նկարներ կը կազմեն, և Սուլթան Ահմէտէն խմբագրեալ Թրքական ոտանաւոր արձանագրութիւններով ։ Տանիքը պչրողաբար ի վեր ամփոփուած է չինական մեհենի մը նման, և վերջացած՝ փոքրիկ գմբէթներով ։ Այս աղբիւրը՝ Այա Սօֆիայի գմբէթին և չորս աշտարակաց հետ միանալով՝ Պապը-Հիւմայունին արտաքին ամէնէն գեղեցիկ զարդը կը կազմէ ։

Պալատը երեք գաւիթներու բաժնուած է ։

Առաջին գաւիթը, որ կը կոչուի նաև Եէնիչէրիլէրին գաւիթ, կը պարունակէ զինարա-

նը՝ ուր հին զէնքեր կը պահուին, արքունի Փողերանոցն՝ ուր Օսմանեան կառավարութեան դրամները կը շինուին, Հնութեանց թանգարանը, և Չինիլի Քէօշկը՝ ուր կը գտնուէր Եէնիչէրիներու և Թրքական հին տարազներու թանգարանը ։ Այս թանգարանը ժամանակէ մը ի վեր փոխադրուած է Աթ Մէյտանին, արհեստական դպրոցին մէջ ։

Երկրորդ և երրորդ գաւիթներուն մէջ գտնուած շէնքերը մինչև այսօր ճշմարիտ հետաքրքրութեան մ'առարկայ եղած են ։ Նախ բոլորաձև սրահ մը կայ արքունի խորհրդարանով մը՝ սև արաբական քանդակներով և ոսկեզօծ դրուագներով զարդարուած . երկրորդ սրահ մը կայ ջրաներկով գորշախառն նկարուած, և չորրորդ մը զոր Սուլթան Մահմուտ Բ. իր ձեռօք շքեղացուցած է առածներով ։ Կան նաև գրատուն մը, ուրիշ մեծ սրահ մը . և նոր քէօշկ մը, ինչպէս նաև բժշկական վարժարան մ'որ կենդանաբանական պարտիզին քովն է, և Կիւլհանէի շէնքերը ։

Պապը-Հիւմայունէն դուրս, Ահմէտ Գ.ի աղբիւրին ետևը, պարտիզի մը մէջ կայ Իրաւագիտութեան վարժարանը․ իսկ անդին, Այա-

Սօֆիայի մօտ, մեծ շէնք մը կայ որ բարձրագոյն վարժարան ըլլալու համար շինուեցաւ, բայց հիմա դատական գործոց պաշտօնատունըն է՝ ուր կը գտնուին բոլոր դատարանք։

Բարձրագոյն Դուռ (Պապը Ալի կամ Բաշա գաբուսի) ըսուածը՝ առաջին ձորին մէջ շինուած ընդարձակ շէնք մ'է, ուր հաստատուած են Տէրութեան Մեծ Եպարքոսութեան և Արտաքին ու Ներքին գործոց նախարարութեանց, ինչպէս նաև Պետական խորհրդոյ դիւանները։ —Պօլսոյ Երկաթուղւոյ գիծը այս առաջին ձորէն կ'անցնի Բարաքէօյի կամուրջի գլխէն մեկնելով։ Այս կամուրջը շինուած է Պօլսոյ և Ղալաթիոյ մէջտեղ։

Սպարապետութեան Դուռը (Սէրասքէր Գաբուսու), ուր պատերազմական գործոց նախարարը կը նստի, երրորդ բլուրին վրայ շինուած է։ Այս շէնքը ժամանակաւ պալատ էր, այս պատճառաւ Էսկի-Սարայ ալ կը կոչուի որ կը նշանակէ հին պալատ։ Սպարապետութեան դուռը կը գտնուի ընդարձակ հրապարակի մը մէջտեղ, որ շրջապատուած է որմով մը և ուր զինուորական կրթութիւններ տեղի կ'ունենան։ Այս հրապարակին մէկ կողմը զօ-

րանոց մ'ալ կայ. իսկ մէջտեղը կը բարձրանայ Եանկըն Քէօշկէ ըսուած քարաշէն բարձր աշտարակը որ կառուցուած է հայազգի Սենեքերիմ Պալեան անուն ճարտարապետի մը ձեռօք, և որոյ վերի յարկը պահակներ կ'սպասեն միշտ՝ դիտակն ի ձեռին, և երբ Պոլսոյ կամ շրջակայից մէջ հրդեհ նշմարեն, իսկոյն ահագին լապտերներ կախելով՝ ժողովրդեան կ'իմացնեն դժբաղդութիւնը։

Սպարապետութեան Դրան մօտ է և Ելեւմտից Նախարարութեան պաշտօնատունը, որուն շրջապատին մէջ կան հանքաց և անտառաց վարժարանը (օրման վէ մէատին մէքթէպի) և Առեւտրական վարժարանը (թիճարէթ մէքթէպի)։

---

## ՄԱՀՄԵՏԱԿԱՆԱՑ ԿՐՕՆԱԿԱՆ ՇԷՆՔԵՐԸ

Ճամի և Մէսճիտ Թուրք բառերը նշանակութեամբ քիչ տարբերութիւն ունին իրարմէ. Ճամի՝ մեր եկեղեցի (ժողովատեղի) բառին կը համապատասխանէ, իսկ Մէսճիտ՝ մատուռ (փոքր աղօթատեղի) բառին։ Կոստանդնուպոլսոյ մէջ կայ հարիւրէ աւելի ճամի կամ մզկիթ։ Կայսերական մզկիթները տասն և հինգ հատ են և

կը կոչուին . Այա-Սօֆիա , Ահմէտիէ , Սուլէյմանիէ , Օսմանիէ , Մէհմէտիէ , Պայազիտիյէ , Սէլիմիյէ , Եէնի-ճամի , Լալէլի , Տահզատէ ճամիսի . Մահմուտիյէ և Ծիհանկիր ճամիսի՝ Թօբհանէի մէջ . Էյուպի մզկիթը . Ապտ-իւլ-Համիտի մզկիթը՝ Իւսկիւտարի մէջ , և Օրխանիէ՝ ի Պէշիքթաշ :

Այա-Սօֆիա , չորս աշտարակներով . որոյ տաճարը շինուած է գրեթէ քառակուսի յատակագծի մը վրայ որ 76 մէթր երկայնութիւն և 71 մէթր լայնութիւն ունի : Գմբէթը 35 մէթր տրամագիծ և գետնէն մինչև իւր գագաթը 67 մէթր բարձրութիւն ունի , և կը պարունակէ քառասուն և չորս կամարաձև պատուհաններ : Կամարներէն վար կախուած են երկայն չուաններ , որոց ծայրերէն կախուած են անագախառն պղինձէ ջահեր ջայլամի ձուեր , մետաքսէ ծոպեր , և այլն : Մըզկիթին հարաւային կողմը դամբարաններ (Թիւրպէներ) շինուած են :

Սուլթան Ահմէտ Ճամիսի , Աթ Մէյտանիի արեւելեան կողմը : 1610ին Սուլթան Ահմէտ Ա. շինել տուած է այս մզկիթը իւրաքանչիւրը երեք պատշգամ (շէրէֆէ) ունեցող վեց գեղե-

ցիկ աշտարակներով ։ Այս մզկիթին հասոյթը կը հասնի 200,000 դահեկանի ։

Քիւչիւք Այա Սօֆիա ։

Սուլթան Մահմուտի դամբարանը (Թիւրպէ)՝ Աթմէյտանիի արեւմտեան կողմը ։ Մեծ վերանորոգչին այս գերեզմանը՝ իր քաւարանին վրայ, փոխանակ ապարանշի (օտաքը), կը կրէ վերանորոգութեան փէսը որ ադամանդէ ցըցունքով մը և ադամանդազարդ մեծ ճարամանդով մը զարդարուած է ։ Այս դամբարանին մօտ են Հասարակաց Կրթութեան պաշտօնատունը (Մէարիֆ) և Քաղաքային (Միւլքիյէ) վարժարանը ։

Նուրի Օսմանիէի մզկիթը՝ երկու աշտարակով՝ երկրորդ բլուրին վրայ, ոչ հեռի այրեցեալ սիւնէն ։

Պայազիտի ճամիին (2 աշտարակով) Սպարապետութեան դրան դիմաց. ասիկայ աղաւնիներու մզկիթ ալ կը կոչուի բազմաթիւ աղաւնիներու պատճառաւ, որոնք գաւթին մէջ կը թռչտին, և որ յառաջ եկած են՝ կ'ըսուի՝ երկու հաւիալէ (Խօղան Գէօվէրճինլի) զոր Պայազիտ Բ. իրմէն ողորմութիւն խնդրող աղքատէ մը գնեց ։ Մանաւոր հասոյթ մը յատկացուած է

այս թռչնոց սննդեան համար, որոնք սակայն օր ըստ օրէ նուազելու վրայ են։

Լալէլի ճամիսին երկու աշտարակով, Սուլթան Պայազիտէն անդին դրամվայի ճամբուն վրայ։ Այս մզկիթին մօտ է Սուլթան Մուսթաֆա Գ.ի և Մուհամմէտ Գ.ի գեղեցիկ դամբարանը։

Շահզադէի ճամիսը, զոր 1543ին Սիւլէյման կանգնած է ի յիշատակ իւր Մուհամմէտ որդւոյն։ Այս մզկթին երկու աշտարակները մայրաքաղաքիս ամենաչքեղ աշտարակները կը ներկայացնեն իրենց նուրբ ատամնաձեւ քանդակեալ զարդերով։

Սիւլէյմանիէյի ճամիսը՝ երրորդ բլուրին ընդարձակ դաշտավայրին վրայ։ Սինան ճարտարապետութեան մէկ գլուխ գործոցն է այս, որ 1550-1566ին Սուլթան Սիւլէյմանի համար կառուցուած է, և որ չքեղ տեսարան մը կը ներկայացնէ Ոսկեղջիւրին և իւր շրջակայից վրայ։ Սիւլէյմանիէ չորս աշտարակ ունի. երկու մեծերը՝ երեք պատշգամով, երկու փոքրերն՝ երկու պատշգամով։ Այս մզկթին մէջ կը պահուի Մէքքէի մէկ փոքր քանդակած գործ յատակագիծը։ Սիւլէյմանիէի եկամուտը կը հասնի 300,000 դշի։

17

Մէհմէտ (Ֆաթիհ)

Սուլթան ~~Մէհմէտ~~ ճամին 1471ին չորրորդ բլուրին վրայ երկայարկ երկու աշտարակով կառուցուած է Յոյն ճարտարապետի մը ձեռօք յունական եկեղեցւոյ մ'աւերակաց վրայ: 1768ին Մուսթաֆա Գ. նորոգեց զայն որ երկրաշարժէ մը փճացած էր: Յատակագիծը նմանութիւնն է Այա-Սօֆիայի:

Սէլիմ Ա.ի ճամին՝ հինգերորդ բլուրին վրայ՝ իւր երկու աշտարակներով և միակ գմբէթով գեղեցիկ տեսարան մը կը ներկայացնէ Ոսկեղջիւրին վրայ:

Եէնի ճամին կամ Վալիտէ Սուլթանի մզկիթը կը գտնուի կամուրջին գլուխը Թրամվային սկսելու տեղը, և ունի երկու աշտարակներ՝ երեք շըքեղ պատշգամներով: Իւր շրջապատը վաճառատեղի մ'է դրեթէ և կը պարունակէ Օսմանեան թղթատունը: Արեւելեան կողմն է Ալայ-իւլ-Համիտի գամբարանը: Մուհամմէտ Դ.ի մայրը շինել տուած է այս մզկիթը:

Ակ-Սարայ կամ Եէնի Վալիտէ ըսուած փոքր, բայց սիրուն մզկիթը կառուցուած է Սուլթան Ապտ-իւլ-Ազիզի մօր ծախիւք,

Երկրորդ ձորը նշանաւոր է վաճառանոցներով և շատ մը օթեւաններով (խան):

---

## ԽԱՆՔ, ՎԱՃԱՌԱՆՈՑՔ ԵՒ ԲԱՂՆԻՔ

Ճանապարհորդք միշտ կարող են խաներու մէջ պարապ սենեակ մը գտնել վարձու, բայց պէտք է իրենց հետ անկողին ունենան: Վաճառականք ալ սենեակ կը վարձեն խաներու մէջ գործատեղի կամ գրասենեակ ընելու համար:

Գլխաւոր խաներն են. Չաքմաքճըլար Եօքուշը՝ Վալիտէ խանը որ 366 սենեակ ունի, և Մեծ Նոր խանը որ 166 սենեակ ունի. Մահմուտ Բաշա փողոցը՝ Վէզիր խանը որ մեծ ջրշեղջ ունի: Այս երկու փողոցներն ալ մեծ վաճառանոցին կամ շուկային մօտ են:

Չարշըները բազմաթիւ կրպակներէ կը բաղկանան, հրդեհներու դէմ քարաշէն ամուր կամարներով պատսպարուած: Բաղնիքները, որ այնչափ կարեւոր են առողջութեան համար, ոչ մի տեղ այնքան կատարելագործուած չեն որքան Թուրքիոյ մէջ, ուր ամէն հարուստ տուն իւր հետ յատուկ սենեակ մ'ունի լուացուելու համար:

ՄԸՍԸՐ ՉԱՐՇԸՍԻ (Եգիպտական շուկայ)

բռուած շուկային մէջ կը վաճառուին ընդհանրապէս Հնդկաստանէն, Եգիպտոսէն, Սիրիայէն և Արաբիայէն եկած համեմներ, ինչպէս ծառրաքար (սիւնկէր թաշը), ներկեր, արմաւ, դարիճենիկ (թարչըն), կնդրուկ (կիւնլիւք), պիստակ, յամպար (անուշահոտ նիւթ մ'որ ծովէն կ'ելնէ. տաճկերէն կ'ըսեն ամպէր), մազտաքէ (սագըզ), զանազան խէժեր (զամգ), կոճապղպեղ (հնդիկ պղպեղ, զէնճէֆիլ), հնդիկ ընկոյզ, ափիոն, հաշիշ (տերեւ հնդիկ կանեփոյ), և այլն, որոց թափանցիկ և անուշաբոյր հոտը յաճախ կը փանդատացնէ զգայուն քիթ ունեցող անցորդները: Այս շուկայն կամարներով ծածկուած և երկաթէ դռներով պաշտպանուած է և կը բաղկանայ իրարու շատ կից մթին խանութներէ, որոց ներսը և դուրսը իրարու վրայ և իրարու քով դիզուած են արկղիկներ և պարկեր՝ լեցուն վերոյիշեալ ապրանքներով: Այս խանութները գիշեր և ցերեկ բաց կը մնան: Երեկոյները այս շուկային միայն դռները կը փակուին, որ չորս հատ են թուով: Մսըր Չարշըսիի բոլոր խանութպանք Թուրք կամ Արապ ըլլալով, ուրբաթ օրերը գոց կը մնայ այս շուկան, որ կը գտնուի մասնաւոր պահապաններու հսկողութեան ներքեւ:

ՄԵԾ ՇՈՒԿԱՅՆ, որ երկրորդ և երրորդ բլուրներուն մէջտեղ կը տարածուի, անհուն տարածութեամբ քարուկիր չէնք մ'է անկանոն ձեւով, չրջապատուած բարձր պատերով և ծածկուած բաղում կամարներով, որոց վրայ բացուած պատուհաններէն կը լուսաւորուի չէնքին ներքին կողմը: Այս շուկայն՝ իւր փողոցներով, նրբափողոցներով, անցքերով, դուռներով, (տէօրթ եօլ աղզը), աղբիւրներով, սրճարաններով, ճաշարաններով, բաղնիքով, խաներով, և մինչեւ իսկ մզկիթներով, քաղքին մէջ քաղաք մը կը կազմէ: Իւրաքանչիւր փողոց մասնաւոր տեսակ ապրանքի մը վաճառման յատկացեալ է, և բոլոր այս փողոցներուն կեդրոնը կը գտնուի շուկային պէտէսթէն ըսուած մասը. իսկ արեւմտեան կողմն է պէր ճաշար ըսուած մասն՝ ուր զանազան գործածուած ապրանքներ կը վաճառուին աժան:

Մեծ շուկայն ամէն երեկոյ արեւուն մարը մտնելէն առաջ կը փակուի և առաւօտուն ուշ կը բացուի: Ուրբաթ, Շաբաթ և Կիւրակէ օրերը կարգաւ գոց կը մնան Թրքաց, Հրէից և Քրիստոնէից խանութները:

## ԵԿԵՂԵՑԻՔ, ՎԱՐԺԱՐԱՆՔ ԵՒ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՔ

Հայ և Յոյն եկեղեցեաց մէջ իբրև նշանաւորագոյնները կը յիշենք Հայոց Պատրիարքական Մայր եկեղեցին, կառուցեալ յանուն Ս. Աստուածածնայ, Պօլսոյ հայկական եկեղեցեաց ամէնէն ընդարձակն, զոր Գում-Գաբուի թաղին մէջ կառուցած է ազգին անզուգական բարերարը Պէզճեան Յարութիւն ամիրա, և որոյ շրջապատը կը պարունակէ երեք գլխաւոր տաճարներ, այն է Միջին եկեղեցին, սորա արևելեան կողմը՝ կանանց յատկացեալ եկեղեցին, իսկ արևմտեան կողմը՝ Ս. Խաչ անուանեալ եկեղեցին։ Մայր եկեղեցւոյ կից է Պէզճեան Մայր վարժարանն, ուր կը յաճախեն 300է աւելի մանուկներ։ Հայոց Պատրիարքարանը, ուր կը նստի Հայոց Պատրիարքը, և ուր կը գումարուին Հայոց ազգային ժողովները, կառուցուած է ճիշդ Մայր եկեղեցւոյ դիմաց։

Սամաթիոյ թաղին յանուն Ս. Գէորգայ կառուցեալ հոյակապ եկեղեցին, Պօլսոյ Հայ եկեղեցեաց ամէնէն հինը, ժամանակաւ Յու-

նաց սեպհականութիւն , 'ի սկզբան եղած է Պատրիարքական Եկեղեցի՝ իրեն կից ունենալով Պատրիարքարանը ։ 1865ին կամ 1866ին՝ Սամաթիոյ մեծ հրդեհին ժամանակ , հրոյ ճարակ լինելով այս եկեղեցին , այս տարի 'ի հիմանց նորոգ կառուցուեցաւ գլխաւորաբար Յակոբեան Միքայէլ էֆէնտիի բարերարութեամբ և ազգայնոց օժանդակութեամբ ։ Այս եկեղեցւոյն արեւելեան և արեւմտեան կողմերը կանգնած են երկու հոյակապ քարուկիր վարժարաններ , Ս. Սահակեան և Նունեան-Վարդուհեան , մին մանչ տղայոց , միւսն աղջկանց յատկացեալ ։ Սամաթիոյ մէջ կաթոլիկ հայք ունին եկեղեցի մը կառուցեալ յանուն Յղութեան Ս. Աստուածածնի ։

Խարա-Կէօմրիւկիւ Հրաշագործ Ս. Աստուածածին եկեղեցին , ուխտատեղի է՝ մանաւորապէս կիւրակի և հինգշաբթի աւուրց համար ։

Պալատու Ս. Հրեշտակապետ եկեղեցին , որ 'ի սկզբան յունական եկեղեցի էր, նշանաւոր է իւր հնութեամբը ։

Յիշատակութեան արժանի է Ֆէնէրի Յունաց Մայր եկեղեցին , որոյ կից է իրենց Պատ-

րիարքարանը և Նորակառոյց հոյակապ դըպրոցը:

Կառավարական վարժարանաց մէջ պէտք է յիշատակել Գեղարուեստից վարժարանը, Քաղաքային վարժարանը (Մէքթէպի Միւլքիէ), Բըժըշկական վարժարանը (Մէքթէպի Թըպպիյէ), Արհեստից վարժարանը (Մէքթէպի Սանայէ), Իրաւագիտութեան վարժարանը (Մէքթէպի Հուգուգ), Առեւտրական վարժարանը (Թիճարէթ Մէքթէպի), Հանքաց և Անտառաց վարժարանը (Օրման վէ Մաադէն Մէքթէպի), և այլն:

Բարեգործական հաստատութեանց մէջ ամէնէն նշանաւորն է բարեյիշատակ Պէզճեան Յարութիւն ամիրայի հիմնարկած Հայոց Ազգային Հիւանդանոցը, որ կը գտնուի քաղքին արեւմտեան կողմը՝ Եէտի-Գուլէի պարիսպներէն դուրս, և որ իր մէջ կը պարունակէ նաև յիմարանոց, եկեղեցի և վարժարան՝ ուր ազգին որբ զաւակները կը խնամուին և կը դաստիարակուին: Այս վարժարանը ժամանակաւ փայլուն վիճակ մ'ունեցած է և ընծայած է ազգին շատ աշակերտներ, որոնք այժըմ կը ծառայեն Ազգին իբրև վարժապետ, իբրև խմբագիր, իբրև ազգային պաշտօնեայ,

և այն ։ Ազգային Հիւանդանոցի ամբողջ հաստատութիւնը կը պարունակէ 600էն աւելի հիւանդ, ծեր, անկար, յիմար և որբ, որք կը խնամուին Ազգ. Պատրիարքարանի կողմանէ ընտրուած մասնաւոր Հոգաբարձութեան մը ձեռամբ։ Ամէն տարի, Քրիստոսի Համբարձման տօնին օրը, կը կատարուի Հիւանդանոցի հիմնարկութեան տարեդարձը ։ Ամէն տարի, Մայիսի 24ին, Հիւանդանոցի դիմացի պարտիզին մէջ կը կատարուի նաև Ազգային Սահմանադրութեան Տարեդարձի հանդէսը ։

Մեր Ազգային Հիւանդանոցի մօտ է Յունաց ազգային հիւանդանոցը, որ նոյնպէս իւր մէջ կը պարունակէ եկեղեցի և վարժարան ։

---

## Հ Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն Ք

Իբրև հին շէնքեր պէտք է յիշենք նախ մեծ և փոքր Այա-Սօֆիա ըսուած մզկիթները և Եէտի-Գուլէ ըսուած ամուր պարիսպները՝ եօթն աշտարակներով ։

Քաղաքին միւս հնութիւններն են .

Աթ-Մէյտանը (վաճառատեղի ձիոց) ըսուա-

ծը, որ ժամանակաւ ձիարշաւի տեղ էր, մեծ հրապարակ մ'է գրեթէ ուղղանկիւնի ձեւով, և այսօր ունի 250 քայլ երկայնութիւն, 150 քայլ լայնութիւն (երբեմն 370 մէթր երկայնութիւն և 185 մէթր լայնութիւն ունի եղեր)։ Այս հրապարակին մէջ կան երեք հին յիշատակարաններ, որք են. Ա. Եգիպտական կոթողը, որ Եգիպտոսէն փոխադրուած է 'ի Պօլիս 1500 տարի առաջ, և որուն վրայ քանդակուած են մի քանի նկարներ և յունական ու լատինական արձանագրութիւններ։ Շինուած է գորշ վարդագոյն միապաղաղ խստաքարէ՝ իբր 30 մէթր բարձրութեամբ և 2 մէթր լայն խարսխով։ Չորս երեսներուն վրայ փորագրուած են մեհենագրութիւններ։ — Բ. Օձաձեւ գալարեալ սիւնը՝ շինուած անագախառն պղնձէ, այժմ ունի իբր հինգ մէթր բարձրութիւն, և կազմուած է երեք օձերէ որոց վիզը և գլուխները խորտակուած են։ — Գ. Կոստանդինի աւերեալ կոթողը, որուն վրայ ժամանակաւ բարձրաքանդակ պատկերներ պարունակող անագախառն պղնձէ տախտակներ գամուած են եղեր։

Այրեցեալ սիւնը (Չէմպէրլի Թաշ) երկրորդ բլուրին վրայ՝ Նուրի-Օսմանիէ մզկիթէն վեր,

Թրամվայի ճամբուն վրայ։ Այս պորփիւրէ ([illegible]) սիւնը միապաղաղ չէ, այլ կը բաղկանայ 9 գլանաձեւ կտորներէ որոնք իրարու մէջ անցուած են դափնեայ պսակի ձեւն ունեցող գօտիով, որ թոյլ չը տար տեսնել կտորներու միացումը, և պսակներով զարդարուած միապաղաղ սիւնի մը ձեւը կուտայ ամբողջին։

Երէ պաթան սարայ ըսուածը Այա-Սոֆիոյ մզկիթին գլխաւոր ճակատին դիմացը՝ Թրամվայի ճամբուն վրայ՝ ստորերկրեայ ընդարձակ լիճ մ'է, ծածկուած հաստատուն կամարներով, որք հաստատուած են անթիւ սիւներու վրայ, և որուն վրայ շինուած են մզկիթներ, փողոցներ, և տուներ՝ որք կամարներուն վրայ ծակեր բացած են իրենց ջուրը հայթայթելու համար։ Հետաքրքիր անձինք՝ մասնաւոր տունէ մը միայն կարող են այս լիճն իջնել ջահ 'ի ձեռին։ Ժամանակաւ Անգլիացի մը նաւակ մ'իջեցուցած է այս լիճը՝ մէջը շրջագայելու համար։

Հազար ու մի սիւներով ջրամբարը (պին պիր տիրէկ) կը գտնուի Աթ-Մէյտանին և Այրեցեալ Սիւնին մէջտեղ։ Այժմ չոր է այս ջրամբարն, ուր կը բանին չուանամանն արհեստաւորք։

## ՔԱՂԱՔԻՆ ՊԱՏԵՐԸ ԵՒ ԴՈՒՌՆԵՐԸ

Ամբողջ Ստամպօլ ժամանակաւ շրջապատուած էր պատերով, որոնք ունէին 26 դուռ : Սարայ-Պուրնուէն սկսեալ մինչեւ Եէտի-Գուլէ, ծովեզերեայ պատերը մեծաւ մասամբ քանդուած են այժմ, բայց դուռներուն անունները դեռ կը մնան և այդ անուններով կը յիշատակուին նոյն տեղի թաղերը : Քաղաքին Մարմարայի ծովուն վրայ նայող դուռներն էին՝ Սարայ-Պուրնուէն սկսեալ՝ Նախ Տէմիր-Գաբուն, յետոյ, փարոսը և Կիւլհանէն անցնելէ ետքը, Ախըր-Գաբուսուն՝ ուր ժամանակաւ արքունի ախոռները կը գտնուէին եղեր. երկրորդ փարոսի մը պատահելէ ետք կուգանք Չաթլատը-գաբու, ուր կը գտնուի Քիւչիւք Այա-Սօֆիա մզկիթը : Գատրիգա-լիմանիէն անցնելով կուգանք Գում-գաբու, որ բազմահայ թաղ մ'է : Եէնի-Գաբու՝ գրեթէ ամբողջովին հայկական թաղ մ'է : Լանկա-պօսթանիէն անցնելով կը հասնինք 'ի Տավուտ-փաշա գաբուսի, որ թրքական թաղ մ'է : Սամաթիա-Գաբուսուն Հայոց և Յունաց թաղ է : Սամաթիոյ և Նարլը-Գաբուի մէջտեղ

կայ Թրքաց թաղ մը՝ Էյուպ-Սուլթան ըսուած մըզկիթով։ Շարունակելով մեր ճանապարհը պարտէզներու մէջէ, կը հասնինք քաղաքին հարաւային ծայրը։

Քաղաքին արեւմտեան կողմը, դեռ կանգուն կը մնան ցամաքային պարիսպները՝ կըրկին պատերով և խրամով։ Պատերազմի ատեն այս խրամներուն մէջ ջուր կը լեցնեն եղեր ժամանակաւ. այժմ իբրև պարտէզ կը գործածուին։ Այս կողմէն քաղաքին դուռներն են՝ հարաւէն սկսելով՝ Եէտի Գուլէ գաբուսու; Սիլիվրի գաբուսու, Եէնի Մէվլէվիհանէ գաբուսու, Թօփ գաբու և Էտիրնէ գաբուսու։ Այս պարիսպներէն դուրս կը գտնուին Հայոց, Յունաց և Տաճկաց գերեզմանատուները։

Քաղաքին արեւելեան կողմի, այն է Ոսկեղջիւրին վրայ նայող թաղերուն անունները կը յորջորջուին՝ քաղաքին նոյն կողմի դռներուն անուամբք, որք վերցած են այժմ։ Այս թաղերն են. նախ՝ Այվան-Սարայ, որ Թրքական թաղ մ'է։ Պալաթ՝ որ Հրէից թաղ է աղքատ և ողորմելի վիճակի մէջ։ Ֆէնէր, յունական գեղեցիկ թաղ մը՝ պատրիարքական եկեղեցիով և բարձրագոյն վարժարանով։ Եէնի-գաբու,

Տէյիրմէն-գափուսու, Ախըր-գափուսու՝ ուր ալիւրի վաճառատուններ կան և ուրկէ դէպ 'ի դիմացի եզերքը ձգուած Հայրաբէյէ անուն դեղեցիկ նոր կամուրջ մը քաղաքը կը կապէ Ղալաթիոյ արուարձան ծայրին հետ : Յետոյ կուգան Օտուն գափուսու՝ որու մօտ է Եէմիշ-Իսկելէսին, Պալըգ Բազար-գափուսու, Էմին-Էօնիւ և Պահչէ-գափուսու, ուր հաստատուած է մեծ մաքսատունը : Ասոնցմէ անդին, դէպ 'ի Սարայ-Պուրնու, կան Մէյվէ խօշ իսկելէսի և Սիրքէճի իսկելէսի ըսուած նաւամատոյցները :

Saray Burnu ile Ahır Kapısı arasında Degirmen Kapısı

Balıkhane Kapısı ve birde Top Kapısı? yazıle ka diger Top Kapısı ile alakalı degil

## 2. ԱՐՈՒԱՐՁԱՆՔ

Կ'սկսինք Էյուպէն, որ ոսկեղջիւրին վրայ Թրքական թաղ մ'է : Այվան-Սարային արեւմըտեան կողմը կայ փոքր թաղ մը Թէքֆուրսարայ անուն, իսկ Թէքֆուրսարայի արեւմտեան կողմն է Էյուպը, որու գեղեցիկ մզկիթին մէջ կը կատարեն Սուլթանք՝ իրենց գահակալութեան ժամանակ՝ Օսմանի սուրը իրենց մէջքը կապելու արարողութիւնը, և մեկնելով անկից, հանդիսաւոր կերպիւ կը մտնեն քաղաք։ Էյուպի մօտն է Ճէպհանէ ըսուած արուեստանոցը (փապրիգա) ուր կը գործուին կտաւեղէնք, ասուեղէնք, և այլն :

Ոսկեղջիւրի վերին ծայրը կը գտնուի գեղեցիկ հովիտ մը՝ մագաղաթի և թուղթի հին գործարանի մ'անուամբ Քեաղըտ-խանէ կոչուած՝ ուր կայ կայսերական գեղեցիկ քէօշք մը փոքրիկ շքեղ մզկիթով մը, և արքունի վառօդարան մը, և որ գարնան եղանակին մէջ շրջագայութեան և զուարճութեան յատկացեալ վայր մ'է Պոլսոյ ժողովրդեան համար :

Անցնելով Ոսկեղջիւրի հիւսիսային եզեր-

քը, կը հանդպինք նախ Սէտլիճէ և Հալըճ-Օղլու ըսուած թաղերուն, որոց մէջ կան ումբաձըգաց զօրանոց մը, զինուորական վարժարան մը, Հայոց Ս. Ստեփաննոս եկեղեցին, Ներսէսեան երկսեռ վարժարանները և Սրբուհի Մայրապետին Որբանոցը: Հալըճ-Օղլու նշանաւոր է իբրև ժամանակին ամիրայներէն բընակեալ գիւղ մը: Հալըճ-Օղլուէն վար կան Բիրի-բաշա և Խասքէօյ կոչուած հրէաբնակ թաղերը: Յետոյ կուգայ

Թէրս-Հանէն (Նաւարան) իւր դեղեցիկ հիւանդանոցով և ծովային տեսչութեան նորակառոյց շքեղ պալատով, որ կը գտնուի 'ի Գասըմ-բաշա: Խասգիւղի ետեւի բարձանց վրայ են Օք-Մէյտան ըսուած տեղն՝ ուր այս հրէական թաղին մեծ գերեզմանատունը կը պարունակէ, և դաշտագետին մ'ուր Սուլթանք նիզակաձգութեան վարժութիւններ կըներ եղեր: Վայելուչ Քէօշք մը ցոյց կուտայ այն տեղն ուր կը կենային Սուլթանք, և առանձնացած մարմարեայ սիւները ցոյց կուտան նետերուն ինկած տեղերը:

Գասըմ-բաշայի աղտոտ թաղէն յետոյ, ուր ունինք Եկեղեցի մը յանուն Ս. Յակոբայ Մըծ-

քնայ և վարժարան մը, կուգայ Սըլլը-գաքուսին, որ Ուն-Գաբուսիին հետ կապուած է Հայրեթիյէ կամուրջով։ Յետոյ՝ Ղալաթիա, որ Քարաքէօյի կամուրջով կապուած է Պահչէ-Գաբուի հետ։ Ղալաթիոյ բարձանց վրայ, Ղալաթիոյ և Բէյօղլուի մէջտեղ, կայ Ղալաթա-գուլէսի ըսուած բարձր աշտարակը (Ճէնովացւոց ժամանակ շինուած) որ 141 աստիճանով սանդուղ մ'ունի՝ 8 յարկերու բաժնուած՝ որ այցելուները կ'առաջնորդէ շրջանակաձև ապակեայ սրահ մը։ Այս տեղ մասնաւոր պահապաններ գիշեր և ցերեկ կը հսկեն դիտակներով, որպէս զի եթէ թաղի մը մէջ հրդեհ պատահի, իմացնեն անմիջապէս։ Այս սրահին մէջ պահապանք սրճատուն ալ ունին այցելուաց համար։ 41 աստիճաններէ ևս վեր ելնելով, կը հասնինք երկրորդ սրահ մը վանդակակերպ պատուհաններով։

Ղալաթիոյ մէջ ունինք յանուն Ս. Գրիգոր Լուսաւորչայ եկեղեցի մը՝ հարուստ կալուածներով, և հոյակապ քարուկիր վարժարանով մը՝ որ 1871ին կառուցուած է գլխաւորաբար Փափազեան Ստեփան էֆ.ի ջանիւք, և որոյ շինութեան համար Գաքամաճեան Յա-

րութիւն Էֆէնտին իւր կենդանութեանը նը-ւիրած է 500 Օսմանեան ոսկի ։ Այժմ կեդ-րոնական վարժարան եղած է այս շէնքը որուն մէջ բազում տարիներէ ի վեր կիւրակէ օրեր չափահաս պանդուխտ ազգայնոց անձնը-ւիրաբար կը դասախօսեն Քրիստոստուր Էֆէն-տի Ղազարոսեան և Վահրամ Էֆէնտի Մար-գարեան ։ Ս. Լուսաւորիչ Եկեղեցւոյ բակը ամփոփուած են մարմինք Յարութիւն Գաբա-մաճեանի և Մատթէոս Այվատեանի ։ Այս վերջինը ազգային շրջանակին մէջ իւր եռան-դուն գործունէութեամբ և իբրև «Արարատ» լրագրոյ Խմբագրապետ նշանաւոր հանդիսա-ցած և ամբողջ ազգին համակրութիւնը առ ինքն դրաւած էր ։ Այս եկեղեցին ուխտատե-ղի սահմանուած է մասնաւորապէս հինգշաբ-թի աւուրց համար ։

Ղալաթիոյ մէջ Կաթոլիկ Հայք ունին յա-նուն Ս. Փրկչի եկեղեցի մը որուն կից է Պատ-րիարքարանը . կան նաև յունական և լատի-նական եկեղեցիներ , ուրիշ նշանաւոր շինու-թիւններ , ինչպէս՝ կամուրջին մօտ Գօմօսիօն խանը որ և կը կոչուի Ակմբանոյ ( պօրսա ) , քիչ մը հեռուն՝ մաքսատունը , տապարադի

Նաւային ընկերութեանց գրասենեակները , հոյակապ խաներ , դրամատունք , ևն. ևայլն ։ Ստորերկրեայ երկաթուղի մը (**Թիւնել**) Ղալաթիան հինգ վայրկենի մէջ 20 փարայով կը միացնէ Բերայի հետ ։ Ղալաթիայէն մինչև Ազապ գաբուսի , ճանապարհին վրայ հաստատուած են երկաթեայ զուգահեռական գծեր , որոց վրայէն հանրակառք (**Թրամվայ**) կը բանին և ժողովրդեան երթևեկութիւնը կը դիւրացընեն ։ Ղալաթիոյ արևելեան կողմն են Թօփհանէ և **Ֆընտըգլը** ըսուած թաղերը ։

**Բէրան** (Պէյ-Օղլու) կը տարածուի Ղալաթիոյ , Թօփ-Հանէի և Ֆընտըգլըի բարձանց վրայ դէպ 'ի հիւսիս ։ Եւրոպացիք կը բնակին գլխաւորապէս 'ի Բերա և 'ի Ղալաթիա ։ Բերա և ո՛չ մէկ կողմանէ ուղղակի յարաբերութիւն ունի ծովու հետ , բայց ունի բարձր և օդաւէտ դիրք ։ Ղալաթիայէն սկսեալ մինչև Բերա , և Բերայէն վեր մինչև Շիշլի բանող Թըրամվայի գծերը , ինչպէս և ստորերկրեայ երկաթուղին , դիւրացուցած են հաղորդակցութիւնները ։ Բերայի մէջ կան շատ նշանաւոր շէնքեր, ինչպէս՝ օրինակի համար՝ Հայոց Ս. Երրորդութիւն , Ս. Յարութիւն և Ս. Լուսաւո-

րիչ եկեղեցիք, Կաթոլիկ Հայոց Ս. Յովհան Ոսկեբերան և Ս. Աստուածածին եկեղեցիք, յունական, լատինական և այլ եկեղեցիներ, Կայսերական Վարժարանը (լիսէ), եւրոպական տէրութեանց դեսպանատունք, հիւրանոցներ, թատրոններ, հոյակապ և փառաւոր տուներ, ևլն. ևլն.: Բերայի մէջ Հայոց վարժարանք են Նարեկեան, Արշակունեանց, Ս. Լուսաւորչեան և Ս. Մեսրոպեան: Կաթոլիկ Հայք ունին Նախակրթական վարժարան մը Ս. Յակոբայ հիւանդանոցին մէջ, և գիշերօթիկ ու ցերեկեայ վարժարան մը Վիեննայի Մխիթարեան Միաբանութեան վանուց մէջ ('ի Բանկալթի): Կաթոլիկ Հայ տիկնանց Ազգասաէր ընկերութիւնն ունի աղջկանց նախակրթական վարժարան մը ի Բանկալթի՝ Հայոց հին գերեզմանատան դիմաց, իսկ Լալէլի փողոցին մէջ կայ աղջկանց ուրիշ վարժարան մը որ կը խնամուի Հայ Կաթոլիկ տիկնանց Ցառաջդիմասէր Ընկերութեան ձեռօք: Բերայի մէջ է Կաթոլիկ Հայոց Կաթողիկոսարանը ('ի Մէքթէպ փողոց), որուն յարակից շէնքին մէջ կայ Մարանպետանոց մը հանդերձ աղջկանց վարժարանով:

Բերայի սորոտը և Ղալաթիոյ արեւել-

եան կողմն է Թօբ-Խանէ ըսուած հրապարակը։ Այս տեղ է Թնդանօթաց ձուլարանը իւր ընդարձակ դաշտադետինով՝ վանդակապատով մը բաժնուած հասարակաց ճանապարհէն։ Սոյն դաշտադետնին մէջ ծովեզրին մօտ կը բարձրանայ ձեւաւոր փոքր աշտարակ մը՝ որուն վրայ կը ծածանի կայսերական դրօշը։ Այս շրջափակին մէջ է նաեւ Սուլթան Մահմուտի անուան նուիրեալ երկու աշտարակով գեղեցիկ մզկիթ մը։ Դաշտադետնին դիմաց՝ հասարակաց ճանապարհին ձախ կողմը՝ կառուցուած է Թնդանօթարանի վարչութեան պալատը։ Թօփխանէի և Ղալաթիոյ մէջտեղ է Քըլըճ Ալի Փաշայի մզկիթը, որուն դէմ կայ վայելուչ ճաշակաւ շինուած աղբիւր մը։

Մեկնելով Թօփխանէէն և շարունակելով մեր ճանապարհը դէպ յ'արեւելք, կ'անցնինք Ճիհանկիր Եօգուշ ըսուած մզկիթին առջեւէն և կը հասնինք Գապա-Թաշի նաւամատոյցը, ուրկէ քիչ հեռու է Ֆընտըգլը ըսուած թաղը։ Յետոյ կուգանք հրապարակ մը, ուր շքեղապէս կառուցուած են Սուլթան Ապտ-իւլ-Մէճիտի մզկիթը և Տօլմա-Պաղչէի պալատը, զոր Սուլթան Ապտ իւլ-Մէճիտ շինել տուած է Վոսփորի ափանց

վրայ՝ ճարտարապետութեամբ հայազգի Նիկողայոսի Պալեան: Այս տեղ է և կայսերական ախոռը: Տօլմա-Պահչէէն անդին պէտք է անցնիլ լայն և գեղեցիկ օձապտոյտ պողոտայէ մը մինչեւ

Պէշիկ-Թաշ, ուր կը գտնուին կայսերական Չրաղանի ծովեզերեայ հոյակապ և փառատեսիլ պալատները՝ կառուցուած ճարտարապետութեամբ հայազգի Յակոբայ Պալեան, և ուր Հայք ունին մի եկեղեցի յանուն Գիւտ Գօտւոյ Ս. Աստուածածնի, և Մաքրուհեան երկսեռ վարժարանը, որ կառուցուած է ծախիւք Պալեան Սարգիս պէյի ամուսին Տիկին Մաքրուհւոյ: Վեհափառ կայսր Սուլթան Համիտ Խան վերջերս կառուցանել տուաւ այստեղ Օրխանիէ անուամբ գեղեցիկ մզկիթ մը: Պէշիկթաշի բարձանց վրայ է Եըլտըզի կայսերական փառաւոր պալատը, ուր կը բնակի Վեհափառ Սուլթան Համիտ Խան:

Շարունակելով մեր ճանապարհը նոյն ուղղութեամբ, կը հասնինք Օրթաքէօյ, ուր կը բնակին շատ Հրեայներ: Այստեղ Հայք ունին եկեղեցի մը յանուն Ս. Աստուածածնի, մանչ տղայոց վարժարան մը յանուն Ս. Թարգման-

չաց և աղջկանց երկու վարժարաններ՝ Ս. Հըռիփսիմեանց և Նեկտարինեայ։ Կաթոլիկ Հայք ունին եկեղեցի մը յանուն Ս. Գրիգոր Լուսաւորչայ՝ համանուն վարժարանով մը. այստեղ է նաև Անտոնեան միաբանութեան վանքը։ Այս գիւղին մէջ հաստատուած է Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւնը, որ ունի աղջկանց ցերեկեայ և գիշերօթիկ վարժարան մը՝ ուր իրենց ուսման ընթացքն աւարտող աշակերտուհիք վարժուհւոյ կոչումն ստանալով կ՚երթան ուրիշ հայաբնակ քաղաքաց մէջ կրթութիւն ծաւալել։ Օրթագիւղի մէջ կայ նաև Հայկական Կրթարան անուամբ երկրորդական վարժարան մը, որոյ Հիմնադիր-Տնօրէնն է Յակոբ էֆէնտի Գուրգէն։ Յիշատակութեան արժանի է այն փոքրիկ քառակուսի մզկիթը որ նաւամատուցին մօտ կառուցուած է սպիտակ մարմարիոնով և գեղեցիկ ճաշակաւ։

Ինչպէս Ազապ-Գաբուսիէն մինչեւ Ղալաթիա, նոյնպէս Ղալաթիայէն մինչև Օրթագիւղ ամբողջ օրը հանրակառք կը բանի և ժողովուրդը կը փոխադրէ, մէկ գիւղէն կամ թաղէն միւս գիւղը կամ թաղը։ Նոյն պաշտօնը կը կատարեն՝ նաև Վոսփորի մէջ բանող

Շիրքէթի Խայրիէ Ընկերութեան շոգենաւք, որոնք շարունակ կ'երթևեկեն Գարաքէօյի կամուրջին և Նեղուցին եւրոպական և ասիական եզերաց գիւղերուն մէջտեղ ։ Ասկէ մանր շոգենաւներ կը բանին Գարաքէօյի կամուրջին և Ոսկեղջիւրի գիւղերուն մէջտեղ մինչև Էյուպ։

Օրթագիւղէն անդին, դէպ յ'արեւելք, գտնուած գիւղերն են.

Գուրու—Չէշմէ՝ հրէաբնակ գիւղ՝ ուր Հայք ունին եկեղեցի մը յանուն Ս. Խաչի և Ս. Թարգմանչաց վարժարանը՝ սակաւաթիւ աշակերտներով, Առնաւուտ-Քէօյ՝ որ յունական գիւղ մ'է, Պէպէք և Ռումէլի Հիսար՝ որ ունի հին ժամանակէն մնացած պարիսպներ և մեծ ու փոքր զանազան ձեւերով աշտարակներ։ Պէպէքի և Ռումէլի-Հիսարի մէջտեղ, բլուրի մը բարձանց վըրայ կառուցուած է Բողոքականաց ամերիկեան վարժարանը, որ իւր հիմնադրին անուամբ կը կոչուի Ռոպէրթեան վարժարան ։

Յետոյ յաջորդաբար կը ներկայանան Պօյաճը-Քէօյ՝ ուր Հայք ունին եկեղեցի մը և վարժարան մը. Էմիրկեան՝ ուր կայ Եգիպտոսի փոխարքային գեղեցկագիւր ընդարձակ պարտէզով չքեղ և փառաւոր պալատը. Իսթինիէ՝ որ

գեղեցիկ ծովախորշի մը խորը կը գտնուի և ունի առողջարաններ և բազմաթիւ ջրաղացքներ. Եէնի-Քէօյ՝ իւր սիրուն տեսքով և զուարճալի կլիմայով. Թարապիա՝ իւր շքեղ շինուածքներով և գեղեցիկ պարտէզներով. Քիրէճ-Պուրնու՝ որ նոր գիւղ մ'է. Պէօյիւք տէրէ՝ ծովախորշի մը մէջ Վոսփորի ամէնէն մեծ գիւղը, ունի գեղեցիկ հասարակաց պարտէզ և հոյակապ տուներ որոնք գեղեցկութեան կողմանէ կը մրցին իրարու հետ։ Եւրոպական դեսպանաց մեծագոյն մասն այստեղ կ'անցնեն ամառը։ Ռուսիոյ դեսպանին ամառանոցը ամէնէն գեղեցիկ ամառանոցներէն մին է ; որուն ետեւը կ'իյնայ Բէլգրատի անտառ ըսուած հովիտը։ Պէօյիւք տէրէի մէջ ունինք եկեղեցի մը և վարժարան մը։

Պէօյիւք-տէրէն խճուղիով մը կապուած է ծովեզերքէն հեռու դէպ 'ի հիւսիս գտնուող Պահչէ-Քէօյ ըսուած գիւղի մը հետ, որուն արեւմտեան կողմը, հինգ հազարամէթր հեռու, կայ Պէլկրատ գիւղը։

Պէօյիւք-տէրէէն անդին, ծովեզերքէն շարունակելով մեր ճանապարհը, կուգանք Մէզար-Պուրնու, յետոյ Սարը-Եար որ Թրքական

թաղ մ'է, Եէնի-Մահալլէ՝ ուր կը բնակին մեծաւ մասամբ Հայեր և Յոյներ. վերջապէս Ռումէլի-Գավաք՝ ուր Թուրքեր միայն կը բնակին, և ուրկէ անդին մինչ Սև ծովու բերանը գրեթէ չկայ ուրիշ գիւղ: Վոսփորի վերջին սահմանը կը կազմէ Ռումէլի Ֆէնէր ըսուած փարոսը որ դէպ 'ի Սև ծով յառաջացող հրուանդանի մը վրայ շինուած է և կը ծառայէ գիշերները շրջակայները լուսաւորելու, որպէս զի մթութեան մէջ ուղղուող նաւերը ծովեզերեայ ժայռերուն զարնուելով չը խորտակուին:

Աւելի հեռուն, Սև ծովուն կողմը, կը գտնուին Տէմիրճի-Քէօյ, Զէքէրէ-Քէօյ, Տօմուզ-Տէրէ ըսուած գիւղերը, ինչպէս նաև Տէրքօզ գիւղը, ուրկէ մինչև Պօլիս ամբողջ օրուան մը ճանապարհ է: Տէրքօզի լճին ջուրը ստորերկրեայ խողովակներու միջոցաւ Բերա փոխադրուեցաւ մասնաւորապէս կազմուած ընկերութեան մը ձեռամբ արտօնութեամբ կայսերական կառավարութեան: Մտադրութիւն կայ այս ջուրը Պօլսոյ կողմն եւս փոխադրելու:—

# 3. ՎՈՍՓՈՐԻ ԱՍԻԱԿԱՆ ԵԶԵՐՔԸ

Անցնինք այժմ Վոսփորի ասիական եզերքը։ Րումէլի-Գավաղին ճիշդ դիմացն է Անատօլու Գավաղ ըսուած գիւղը՝ Վոսփորի ասիական եզերաց վրայ։ Վերը ըսինք թէ Րումէլի-Գավաղէն վեր, մինչեւ Սեւ ծովու բերանը, ուրիշ գիւղ եւ բնակութիւն չըկայ. Նոյնը պիտի ըսենք նաեւ Ասիական եզերաց համար՝ Անատօլու-Գավաղէն վեր մինչեւ Սեւ ծովուն բերանը. Վոսփորի ասիական եզերաց վերջին սահմանը կը կազմէ՝ Սեւ ծովուն վրայ՝ Անատօլու-Ֆէնէր ըսուած փարոսը։

Անատօլու-Գավաղին մօտն է՝ դէպ 'ի հարաւ՝ Սէութլէ-ճէ ըսուած փոքր նաւամատոյցը, ուրկէ նեղ ճանապարհ մը կ'առաջնորդէ դէպ 'ի Եուշա-դաղ ըսուած լեռը, որ Վոսփորի եզերաց ամէնաբարձր տեղն է եւ ծովուն երեսէն ունի 180 մէթր բարձրութիւն։ Այս լեռան վրայ կայ 6 մէթր երկայնութեամբ եւ կէս մէթր լայնութեամբ գերեզման մը զոր երկու դէրվիշներ կը պահպանեն։ Կ'ըսեն թէ այստեղ թաղուած է Եուշա-դէտէ անուամբ հսկայ մարդ

մը, որուն պատուատած զգեստներուն կտորնե-րըն ալ պահուած են եղեր: Տարին մէկ օր այստեղ ուխտի կուգան մահմետական հի-ւանդներ՝ բժշկութիւն գտնելու համար:

Վոսփորի ասիական եզերքն 'ի վար յա-ռաջանալով, Միւսթիւճէէն յետոյ կուգանք Հիւնքեար-իսքելեսի որ Վոսփորի ամէնէն գեղեցիկ հովիտներէն մին է և ուր կայ կայսերական փառաւոր քէօշք մը: Պէյքօզ ծովախորշի մը մէջ է և անուանի է իւր գեղեցիկ և առատ ջրերով (1). ունի խաղախորդաց գործարան կամ աղաղարան մը (Բուղդահանէ): Ծովե-զերքէն ներս երկու ժամ հեռաւորութեամբ կայ Ակ-պունար գիւղը, և չորս ժամ հեռաւորու-թեամբ՝ Անատոլու-քէօյ գիւղը:

Պէյքօզէն յետոյ կուգայ Ինճիր-քէօյ որ ունի գեղեցիկ պարտէզներ. Բաշա-պահչէսի՝ որ ունի ապակեղինաց գործարան. յետոյ՝ Չիպուք-լու. այնուհետեւ Գանլըճա՝ իւր գեղեցիկ գիւ-

---

[1] Պէյքօզ՝ վարչային բաժանմամբ՝ Վոսփորի ասիական եզերաց համար Կոստանդնուպօլսոյ վեր-ջին սահմանը լինելով, չը գտնուիր Կ. Պօլսոյ քա-ղաքային վարչութեան ուղղակի իրաւասութեան ներքև, այլ ունի առանձին կառավարիչ:

քով ։ Քէօրֆէզ ըսուած փոքր ծովախորշին առջեւէն անցնելով կը հասնինք Անատօլու-Հիսար ըսուած պարսպապատ գիւղը՝ որ Ռումէլի Հիսարին ճիշդ դէմն է, և որուն քովէն ծովը կը թափի Պէօյիւք-Կէօք-Սույու ըսուած գետակը, ինչպէս նաև քիչ հեռուն Քիւչիւք-Կէօք-Սույու գետակը ։ Գանտիլլի գիւղն իւր բարձանց վրայ ունի լապտեր և թնդանօթ որոնք հեռուն պատահած հրդեհը կը ծանուցանեն, վասն զի այս գիւղին առջեւ կը պարզուի Վոսփորի երկու եզերաց ամբողջ տեսարանը ։

Վանիքէօյ, Գուլէլի, Չէնկէլ-Քէօյ, Պէյլէր-պէյ՝ շքեղ պալատով մը, Ըսթավրօզ Թրքական գիւղեր են. յետոյ Գուզկունճուք՝ որուն բնակչաց մեծագոյն մասը Հրեայ են, և ուր ունինք յանուն Ս. Լուսաւորչայ եկեղեցի և վարժարան ։ Վերջապէս կը հասնինք Իսկիւտար ։ Այստեղ վերջ կը գտնէ Վոսփորի մէջ մեր ըրած ուղեւորութիւնը ։

Վոսփորի ամբողջ երկայնութիւնն է իբր 27 հազարամէթր. լայնութիւնն է՝ ամէնէն նեղ տեղը, այն է Ռումէլի և Անատօլու Հիսարներու մէջտեղ, 550 մէթր ։ Ուրիշ տեղուանք աւելի լայն են. Պէյքօզի և Պէօյիւք

-Տէրէի ծոցերուն մէջ կը հասնի 2500 և 3200 մէթրի ։ Ծովուն խորութիւնն ալ տեղւոյն համեմատ կը փոխուի և կը հասնի մինչեւ 50 գրկաչափի ( գուլաճ ) ։

Վոսփորի մէջ կ'որսան զանազան համեղ ձկներ, ինչպէս թիւնիկը ( ուսգումրու ), թրաձուկը ( գըլըճ ), թիւնոսը ( փալամութ ), ոստրէն (իսթիրիտիա) ; ձկան ականջը ( միտիա ), խեցգետինը ( ըսթագօզ ), տափաձուկն ( տիլի ), վահանաձուկըն ( գալգան ), և այլն . կայ նաև առատ դելփին ( եօնուս պալըղը ) ։

---

ԻՒՍԿԻՒՏԱՐ ԵՒ ԳԱՏԸ-ԳԻՒՂ

Իւսքիւտար ո՛չ թէ գիւղ, այլ իւր ընդարձակութեան պատճառաւ կրնանք ըսել քաղաք մ'է, և կը գտնուի Պօլսոյ ճիշդ դիմացը։ Նաւամատոյցին ետև կ'երևան Պէօյիւք-Ճամի ըսուած մզկիթին ճերմակ պատերը և գեղեցիկ աղբիւր մը ։ Աջ կողմը կը տեսնուի Եէնի-Ճամի մզկիթը և զայն շինել տուող Թագուհւոյն դամբարանը (Թիւրպէ) ։ Այստեղ ճանապարհը երկու կը բաժնուի ։ Աջ կողմէն յառաջանա-

լով, Կառավարիչ Բաշային Պալատէն, և աւե֊լի հեռուն՝ դէպ յաջ՝ Դերվիշներու Թեքքէէն անցնելէ յետոյ, կը հասնինք Թրքաց մեծ գերեզմանատունը, որ մէկ մղոնէ (4 Հազարամետր) աւելի տարածութիւն ունի և ծածկուած է բարձրաբերձ նոճիներու (սէրվի) ընդարձակ անտառով մը։ Աւելի հեռուն է Հայտար-Բաշայի դաշտագետինը, այս գերեզմանատան և Գատը-Գիւղի մէջտեղ։ Այս դաշտագետնին մէկ կողմը, դէպ 'ի ծովեզերք, կառուցուած է Սելիմիյէ-Ճամիսի ըսուած մզկիթը՝ չքեղ գմբէթով մը և երկու աշտարակով, ինչպէս նաև Սելի֊միյէ Քըշլասը անուամբ զօրանոց մը՝ որ իւր չորս անկիւններն ունի մէյմէկ աշտարակ։ Աւելի հեռուն, միշտ դէպ 'ի ծովեզրը, կը տեսնէք զինուորական հիւանդանոցը՝ իւր պարտէզով։

Վերադառնալով Իւսկիւտարի նաւամատոյցը, ինչպէս կը յիշէք, Եէնի-Ճամիին քովէն ճանապարհը երկու կը բաժնուի։ Հիմա, յառաջանալով ձախ կողմէն, կ'ելնեն Իւսկիւտարի բարձրերը, որոնք երեք գլխաւոր թաղերու կը բաժնուին։

Ա. Եէնի-Մահալլէ՝ ուր Հայք ունին յանուն Ս. Կարապետի եկեղեցի մը և ճեմարան անուամբ երկսեռ վարժարան մը։

Բ. Սէլամսըզ՝ ուր ունինք յանուն Ս. Խաչի եկեղեցի մը և երկսեռ վարժարան մը: Այս թաղին մէջ է Պէրպէրեան Ռէթէոս էֆէնտիի ցերեկեայ և գիշերօթիկ երկրորդական վարժարանը, ինչպէս նաև Ամերիկացւոց Հոմ դպրոցը:

Գ. Իճատիյէ՝ ուր Հայք չ'ունին եկեղեցի, բայց ունին Ներսէսեան անուամբ վարժարան մը, կառուցուած ծախիւք Գրիգոր էֆէնտիի Ներսէսեան: Այստեղ է Մէզպուրեան Մկրտիչ էֆէնտիի աղջկանց ցերեկեայ և գիշերօթիկ երկրորդական վարժարանը: Իճատիյէ միացեալ թաղ մը կը կազմէ Բուզկունճուքի հետ:

Աւելի բարձրանալով, կը հասնինք Հայոց գերեզմանատունը, ուրկէ անդին շարունակելով մեր ճանապարհը Ուսկիւտարի սահմաններէն դուրս, և անցնելով պարտէզներու և այգիներու մէջէն, կը հասնինք նաև Պուլկուրլու ըսուած գիւղը, ուրկէ ձիով կամ կառքով կը բարձրանան համանուն լերան զառիթափին մինչև կէսը, և անկէ վեր յետիոտն կը բարձրանան մինչև լերան գագաթը. այստեղ դիտողին աչաց առջև կը պարզուի ո՛չ միայն ամ-

բողջ Վոսփորը և Կոստանդնուպոլիսը, այլ և ամբողջ Մարմարա ծովը և իւր կղզիները։ Պուլկուրլուի ջուրերն անուանի են։ Պուլկուրլուէն աւելի հեռու է Աճը-պատէմ գիւղը ուր ունինք Եկեղեցի մը յանուն Ս. Նշանայ։

Վերադառնալով Իւսկիւտար և իջնելով ծովեզերք, ցամաքին ամէնէն աւելի դէպ ի ծով յառաջացած մասին առջև և ծովեզերքէն քիչ հեռու, ծովուն մէջ, կը տեսնենք փոքր ժայռ մը՝ վրան ամուր աշտարակով մը, որ կը կոչուի Գըզ-գուլէսի։

Գատը-գէօղի կամ Քաղկեդոնի մէջ կը բնակի ընդհանրապէս Պոլսոյ վաճառական դասակարգը։ Այստեղ Հայք ունին եկեղեցի մը Ս. Թագաւոր անուամբ, և երկսեռ վարժարան մը՝ որ կը կոչուի Արամեան։ Կաթոլիկ Հայք ունին Վենետկոյ Մխիթարեան Միաբանութեան գիշերօթիկ և ցերեկեայ վարժարանը։ Կայ նաև փոքրիկ թատրոն մը։ Գատը-գիւղի հարաւային կողմն են Մօտա-Պուրնու և Ֆէնէր-Պախչէսի ըսուած հրուանդանները, որոց մէջտեղ կազմուած է Գալամիշ ծովածոցը։ Շարունակելով մեր ճանապարհը մինչ դէպ ի հարաւ, կը

հասնինք Բոսֆոր գիւղը, ուր ունինք յանուն Ս. Նշանայ եկեղեցի մը և յանուն Պէզճեանի երկսեռ վարժարան մը։

## ԻՇԽԱՆԱՑ ԿՂԶԻՔ

Մարմարա ծովուն մէջ կայ ինն կղզեաց խումբ մ'որ կը կոչուին Իշխանաց կղզիք։ Ասոնցմէ հինգը փոքր են, չորսը մեծ։

Չորս մեծ կղզիներն են. Քընալը (կամ Պրօտի), Պուրկազ (կամ Անդիկոնի), Հէյպէլի (կամ Խալքի), և Մեծ Կղզին (կամ Պրինքիպօ. Պէօյիւք Ատա)։

Քընալը կղզին մշակուած է և կը ծառայէ իբրև ամառանոց. այստեղ ունինք եկեղեցի և դպրոց։ Պուրկազ կղզին ժայռերէ կազմուած լինելով՝ գրեթէ անբեր է. Հէյպէլի կղզին ունի քաղցր և մաքուր կլիմայ. բնակիչք ընդհանրապէս Յոյն են. այստեղ կան յունական երեք մեծ վանքեր՝ ճոխ թանգարաններով, Աստուածաբանական ճեմարանով և Առևտրա-

կան վարժարանով։ Մեծ կղզին Իշխանաց կղզիներուն մէջ ամէնէն մեծն է. ունի ութը մղոն շրջապատ, և կը գերազանցէ միւսները բարձրութեամբ, բազմամարդութեամբ, պտղաբերութեամբ և զուարճալի դիրքով։ Ամառները Պոլսէն օդափոխութեան կուգան այստեղ՝ մաքուր օդ վայելելու և ծով մտնելու համար։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՊՕԼՍՈՅ ԽԱՆԵՐԸ

**Առեւտրական ասպարիզի մէջ գործող անձանց համար կրնայ օգտակարապէս ծառայել հետեւեալ ցանկը որ կը պարունակէ Պօլսոյ բոլոր խաներն իրենց տեղերով։**

*Ալաճա խան, Մարբուճճուլար փողոց։*
*Ալթընճը խան, Րիզա բաշա եօգուշու։*
*Ալի բաշա խան, Մէրճան չարշը։*
*Ալի բաշա խան, Եօրկանճըլար պաշը․ Տ․ [1]։*
*Ալի պէկ խան, Չուգուր չէշմէ։*
*Աղա խան, Ասմա ալթը, Թահմիզ փողոց։*
*Աղա խան, Եօրկանճըլար։*
*Ամերիգան խան, Րիզա բաշա եօգուշու։*
*Այնալը խան, Ուզուն չարշը, Չըգրըգճըլար։*
*Այնալը խան, Ունգափան, Չէյրէկ ճամիի գըմաց։*
*Աշըր էֆէնտի խան, Սուլթան համամ։*
*Առնավուտ խան, Թավուգ բազար, Եէսիր բազարը։*
*Ատտարճը խան, Էօրիւճիւլէր․ Տ․*

---

[1] Տ․ կը նշանակէ Տուկային մէջ։

Արապ խան, Սուլթան Մուհամմէտ, Տէվէ խան փողոց։

Արապաճը խան, Սուլթան Մուհամմէտ, Արապաճը մէյտանը։

Բամպուգճը օղլու խան, Մահմուտ բաշա։

Բաստըրմաճը խան, Մէրճան չարշը։

Բիանգօ խան, Ղալաթիա, կամուրջին գլուխը։

Գաթըր խան, Ուզուն չարշը։

Գալճըլար խան, Մահմուտ բաշայի գլուխ, չուկայի դրան քով։

Գամանիթօ խան, Մահմուտ բաշա։

» » Իքի գափուլու, Ղ. [1] Եէնի ճամի փողոց։

Գամանիթօ խան, Ղ. Փէրշէմպէ փազար, պանգայ ալթը։

Գամանիթօ խան քիւչիւք, Ղ. Թէք խօրօզ եէրի։

» » Ղ. Պալըք փազար։

» » Ղ. Փէրշէմպէ փազար, պանգայի դիմաց։

Գամանիթօ խան, Ղ. Եօրկանճըլար։

Գաշըգճը խան, Մահմուտ բաշա։

Գարըմ-պէյ խան, Ղ. Մեծ փողոց։

Գավուքճը խան, Քալպագճըլար պաշը, Գավուքճու փողոց։

---

[1] Ղ. կը նշանակէ Ղալաթիա։

Գատը-Գումրու խան, Մէրճան փողոց։
Գարագուլագ խան, Սուլթան Պէյազիտ։
Գէորգ պէյ խան, Ղ. Եիւքսէք գալտըրըմ։
» » » Ղ. Քիւրէկճիլէր փողոց։
Գըզլար աղասը խան, Մէրճան։
Գըլըճ Ալի բաշա խան, Ղ. Մոմհանէ փողոց։
Գօճաման օղլու խան, Էսկի Զապթիյէ փողոց։
Գումրու խան, Զագմագճըլար եօգուշու, Սա-
գա չէշմէսի փողոց։
Գութուճու խան երկու հատ դէմ առ դէմ,
Թահտա գալէ, Գութուճուլար փողոց։
Գույումճըլար խան, Ղ. Մահմուտիյէ փողոց։
Գունտագճը խան, Թահտա գալէ, Գանթարճը-
լար փողոց։
Գուշագճը խան, Ուզուն չարշըի գլուխ, Խօբիւ-
ճիւլէր։
Գուրշունլու խան, Ղ. Փէրշէմպէ։

Եալտըզ խան, Ղ. Մոմհանէ փողոց։
Եալտըզլը խան, Մէրճան չարշը։
Եաղճը խան, Թավուգ բազար։
Եաղճը խան, Ասմա ալթը, Պալ գափանը։
Եաղլըգճը խան, Թավուգ բազար։
Եարըմ խան, Եօրկանճըլար. Ծ։
Եարըմ խան, Մարփուճճուլար պաշը։
Եարըմ խան, Նուրի Օսմանիյէ ալթը։
Եարըմ խան, Մահմուտ փաշա, Պէզճի փողոց։
Եարըմ Թաշ խան, Մըսըր չարշըյի մօտ։

Եարէզ խան , Ասմա ալթը ։
Եէնի խան , Գ. Եէնի ճամի փողոց ։
Եէնի խան մեծ , Չաքմաքճըլար ։
Եէնի խան փոքր , Չաքմաքճըլար , Սագա չէշմէսի փողոց ։
Եէնի խան , Հասըրճըլար ճատտէսի ։
» » Սուլթան Մէհմէտ , Սարրաֆլար փողոց ։
Եէնի խան , Սուլթան Մէհմէտ , Չիլինկիրլէր փողոց ։
Եէնի խան , Ունգափան , Փափազ օղլու մահալլէսի ։
Եէնի խան , Սուլթան Մէհմէտ , Չէօրէքճի գափուսու ։
Եէմիշ խան , Ուզուն չարշը ։
Եըլտըզ խան մեծ , Մահմուտ փաշա ։
» » փոքր , Մահմուտ փաշա , Պէչճիլէր փողոց ։
Եըլտըզ խան , Գէթէնճիլէր պաշը ։
Եունճու խան , Եօրկանճըլար պաշը ։
Եուսուֆեան խան , Ֆինճանճըլար եօգուշու ։
Եուսուֆ Իզզէտտին խան , Գ. Վօյվօտա , Ֆըռանսական փոստային դէմ ։
Եօլ կէչէն խան , Քիւրքճիւլէր · Շ ։
» » » Գալփագճըլար պաշը ։
» » » Պիթ փազար ։
Եօրմլխասի խան , Պահչէ գարու , Բաքթըվան խանին քովի փողոցը ։

Զաֆրան խան մեծ, Էօրխանիւլէր, Ծ։
» » փոքր, » »

Զինճիրլի խան, Մէրճանի դուռը, Զուհաճըլար Ծ.
» » Ուն Գափան։
» » Դ. Տօղրու եօլ։

Զընտան խան, Զընտան դափուի նէրսի կողմը։
Զիլիֆտար աղա խան, Ուզուն չարշը։
Զիվէր պէյ խան, Դ. Բիւրէքճիլէր։
Զիւմպիւլլիւ խան, Զադմաքճըլար։

Էլպիկ խան, Դ. Վօյվօտա փողոց։
Էմիր խան, Զադմադճըլար։
Էմիր խան, Սուլթան Մէհմէտ, Զէօրէքճիլէր դափուսու։

Էմիրլէր խան, Ուն դափան, Տօղրու եօլ։
» » Սուլթան Մէհմէտ, Մալթա չարշըսը։

Էնֆիյէճի խան, Պալըդ փազար։
Էսէթ էֆէնտի խան, Սուլթան համամ։
Էվլիա խան, Ուզուն չարշըի գլուխ։
» » Եօրկանճըլար. Ծ։
Էօլիւ չըգմազ խան, Մէրճան չարշը։
Էօմէր էֆէնտի խան, Պահչէ դաբու։

Ըպրըգճը խան, Այազմա դաբուսու, Սէփէթճիլէր։

Թահտա խան, Մահմուտ փաշա, Պէզճի փողոց։
Թահտա խան, Ղ. Քիւրէկճիլէր։
Թահտա խան, Գասըմ բաշա։
Թայիֆ խան, Ասմա ալթըին եանը փողոցը։
Թաշ խան, Պահչէ գաբու։
Թաշ խան, Ղ. սօղլու եօլ։
Թաշ տէմիր խան, Թահթա գալէ։
Թապագօ խան, Ղ. Պալըք փազար։
Թաքքէճի խան, Գուլփագճըլար պաշը։
Թիճարէթ խան մեծ, Զագմագճըլար, Թարագ-ճըլար փողոց։
Թիճարէթ խան փոքր, Զագմագճըլար, Թարագ-ճըլար փողոց։
Թօմպըն խան, Էսկի Զապթիյէ փողոց։

Իզզէթ փաշա խան, Ղ. Մէրթէպանի փողոց։
Իզմիր օղլու խան, Րիզա փաշա եօգուշու, Պա-ղըրճըլար։
Իզմիրլի օղլու խան, Ղ. Վօյվօտա։
Իմամէլի խան, Մէրճան չարշը։
Իմարէթ խանը, երկու հատ քովէ քով, Պահչէ գաբու, Համիտիյէ ճատտէսի։
Իյնէճի խան, Ուզուն Զարշը։
Իսպէթճի խան, Ղ. Փէրշէմպէ բազար։
Իւթիւճիւ խան, Հասըրճըլար ճատտէսի։
Իփլիքճի խան, Երկաթ բազար։
Իփսի խան, Ղ. Փէրշէմպէ բազար։

Լէպլէպիճի խան, Գէթ-էնճիլէր պաշը։
Լօյտ խան, Գ. Մոմհանէ փողոց։
Լօնճա խան, Թահթա գալէ, Շէքէրճի փողոց։
Լօրանտօ խան, Գ. Վօյվօտա փողոց։

Խազնատար խան, Թավուգ բազար։
Խալիլ բաշա խան, Գ. Կամուրջի գլուխ։
Խալիլ էֆէնտի խան, Թահթա գալէ, Շէքէրճի փողոց։
Խալիլ խան, Գէթ-էնճիլէր պաշը, Զըգմազ սօգագ։
Խավէար խան, Ղալաթիա, կամուրջի գլուխ։
Խարաճճը խան, Ասմա ալթը, Թահմիզ փողոց։
Խարաճճըլար մաղազասը, Եէնի ճամի փողոց։

Կապայի խան, Ղալաթիա, Քարաքէօյ։
Կէօչէ օղլու խան, Գ. Կէօմրիւք ճատտէսի։
Կըրալի խան, Ղալաթիա, Պալըգ բազար։
Կինօրթա խան, Գ. Փէրշէմպէ բազար։
Կիւմիւշ օղլու խան, Ուզուն չարշըի գլուխ։
Կիւրճի խան, Ասմա ալթը։
Կլավանի խան, Ղալաթիա։

Հալաճեան խան, Ղալաթիա, կամուրջին գլուխը։
Հալիլ բաշա խան [պէօյիւք], Ղալաթիա։
» » » [քիւչիւք] »
Համօ փուլօ խան, Սուլթան Համամ։
Հասան բաշա խան, Տիվան եօլու։
Հավուզլու խան, Մահմուտ բաշա։

Հիւսէյին պէկ խան, Ուն գափան, Եէնի չէշմէ փողոց։

Ղայսէրլի խան, Ղալաթիա, Քիւրէքճիլէր պաշը։
Գօճա բաշա խան, Գօճա բաշա փողոց։

Ճամլը խան, Եօրկանճըլար պաշը։
Ճամպազ խան, Ասիա ալթը, Ծէյթան չարշըսը։
Ճէլալ պէյ խան, Պահչէ գաբու։
Ճիլէպճի խան, Ունգափան, Զէյրէկ ճամիսի դիմաց։
Ճէվայիրճի խան, Հասըրճըլար ճատտէսի։
Ճէֆէր աղա խան, Մահմուտ բաշա, Մէհքէմէ փողոց։

Մաթէօ խան, Թարագճըլար։
Մահմուտիյէ խան, Ֆինճանճըլար։
Մանասթըր խան, Մահմուտ բաշա։
Մաֆա խան, Մաֆա մէյտանը։
Մէհանէլի խան, Սուլթան Մէհմէտ, Սարրաֆ փողոց։
Մէհմէտ Ալի բաշա խան, Ղալաթիա, կամուրջին գլուխը։
Մէհմէտ բաշա խան, Մահմուտ բաշա, Հաճի Քէօչէկ ճամիի դիմաց։
Մէյվէ խօշ Եէնի խան, Պահչէ գաբու, Մէյվէ խօշ։
Մէստճի խան, Լանկա։
Մէրճան խան, Մէրճան չարշը։

Մըմըրլը օղլու խան, Պահչէ գափու, Մէյտան-ճըգ փողոց։
Միլլէթ խան քիւչիւք, Ղալաթիա, Մումհանէ։
Միւսխուռզ խան, Բերա, Եւքսէք գալտըրըմ։
Միւրսիւլ օղլու խան, Պալը Զափթիյէ փողոց։
Միւֆտիւ խան, Թահթա գալէ, Փաչաճը փողոց։
Մուստաֆա բաշա խաներ մեծ և փոքր դէմ առ դէմ, Ցինճանճըլար ճատտէսի։
Մուստաֆա բաշա խան, Թահթա գալէ, Փաչաճը փողոց։
Մուստաֆա բաշա խան զարիֆ, Սուլթան Մէհմէտ։

Յակոբեան խան, Զադմաքճըլար։

Նախըրալ խան, Սուլթան Մէհմէտ, Մայթա չարշըսը։
Նասըֆ աղա խան, Ցինճանճըլար։
Նորատունկեան խան, Ղալաթիա, Վօյվօտա։

Շապճը խան, Պահչէ գափու, պահականոցին քովի փողոցը։
Շարք չարշըսը խան, Րիզա բաշա եօգուշու։
Շէյխ Տավուտ խան պէօյիւք, Թահթա գալէ, Շէքէրճի փողոց։
Շէյխ Տավուտ խան քիւչիւք, Թահթա գալէ, Գանթարճըլար։
Շէյխ իւլ Իսլամ խան, Պահչէ գափու։

Շէրիֆ բաշա խան, Ուզուն չարշըի գլուխ։
Շէքէրճի խան, Մահմուտ բաշա, Զօրապճը խանին փողոցը։
Շէքէրճի խան, Սամա ալթը, Բիրինճիլէր։
Շիշէճի խան, Մարփուճճուլար պաշը։

Չաթալ խան, Օդճըլար պաշը։
Չավուշ պաշը խան, Սամա ալթը։
Չատըրճը խան, Թավուգ բազար, Չիլինկիրլէր։
Չարշըլը խան, Ըխղա բաշա եօգուշու։
Չինիլի խան, Թայադճըլար փողոց։
Չուգուր խան երկու հատ դէմ ու դէմ, Սամա ալթը, Շէյթան չարշըսը։
Չուգուր խան, Մէրճան չարշըսը։
Չուգուր խան, Խօրխուճիւլէր, Ճ։
Չուհաճը խան, Սապաթճըլար իչի, Ճ։
Չօրապճը խան, մեծ և փոքր քովէ քով երկու հատ, Մահմուտ բաշա։

Պալապան խան, Գէմըր փաշա։
Պալթաճը խան, Մարփուճճըլար։
» » Մահմուտ բաշա, Մահքէմէ փողոց։
Պալթաճը խան, Գալփագճըլար պաշը։
» » Երկու հատ քովէ քով, Ղալաթիա, պանգա ալթը։
Պանգա խան, Ղալաթիա, Փէրշէմպէ բազար։
Պասմա խան, Սամա ալթը, Բիրինճիլէր։

Պէզճի խան, Մահմուտ բաշա, Պէզճիլէր փողոց։
Պէքճի պաշի խան, Մէրճան։
Պուրսան խան, Գալաթիա, Մալթէզ փողոց։
Պունճուգճու խան, Չագմագճըլար եօգուշու։
Պօլթաճը խան, Սամա ալթը։
Պօստաքրամ խան, Պիթ բազարի գըլըխը, Ճ։

Սալէպճի խան, Սամա ալթը, Ճէյթան չարշը։
Սաաթճը խան, Երկու հաս. քափի քով, Գալաթիա, Փէրշէմպէ բազար։
Սազըր խան, Բիլա բաշա եօգուշու։
Սամանճը խան, Գալաթիա, Փէրշէմպէ։
Սայըլար խան, Ուզուն չարշը, Թօփուգճու փողոց։
Սալխանէ խան, Սուլթան համամ։
Սապօնճը խան, Ուզուն չարշը,
Սապօնճը խան, Ալիփաշա Համամ, Գէթէնճիլէր գարուսու։
Սարրաֆ խան, Եօրկանճըլար, Ճ։
Սարը Ահմէտ օղլու խան, Ունգափան, Փափազ օղլու մահալլէսի։
Սարմըճըլը խան, Գալաթիա։
» » Սուլթան պազարը, Զառը-ճըլար գարուսու։
Սեղրա խան, Գալաթիա, Փէրշէմպէ։
Սէյիս խան, Ուզուն չարշը, Թօփուքճու փողոց։
Սէլանիկ խան, Գալաթիա, Սէլանիկ փողոց։

Սէփէթճի խան, Գալբագճըլար պաշը։
Սէփէթճի խան, Սամա ալթը, Թահմիզ փողոց։
Սըրա օտալար խան, Այնաճըլար. Շ։
Սըրմաքէշ խան, Տիվան եօլու։
Սիւմպիւլլիւ խան, Չագմագճըլար եօգուշու։
Սիւլէյման բաշա խան, Տիվան եօլու, Սուլթան Մահմուտի թիւրպէին դիմաց։
Սուլթան օտալարը, Մահմուտ բաշա, Մահքէմէ փողոց։

Սուլթան օտալար խան, Մէրճան չարշը։
Սուլու խան, Սուլթան Մէհմէտ, Տօղրու եօլ։
Սուվազօղլու խան, Կալաթա։
Սօրկուճճու խան, Գալփագճըլար պաշը։
Սօֆճու խան, Թավուգ բազար։

Վալիտէ խան պէօյիւք, Չագմագճըլար։
Վալիտէ սուլթան խան, կամուրջին գլուխը։
Վարագճը խան, Սարրաֆլար փողոց, Շ։
Վէզիր խան, Թավուգ բազար, Չէմպէրլի թաշ
Վիթալ խան, Պահճէ գաբու, Մէյտանճըխ փողոց

Տամպուրաճը խան, Ուզուն չարշը, Չըգըրըգճըլար
Տէմիր խան, Թահթա գալէ, Գանթարճըլար
Տէմիր խան, քօվէ քով երկու հատ, Ղալաթիա Քիւրէքճիլէր։
Տէյիրմէն խան, Ղալաթիա, Տօղրու եօլ։
Տէվէ խան, Սուլթան Մէհմէտ, Տէվէ խան փողոց

Բաղթիվան խան , Պահչէ գաբու ։
Բասխըր բաշա խան , Պահչէ գաբու , Ճէլալ պէյ խանըն դիպինդէ ։
Բիղա բաշա խան , Բիղա բաշա եօգուշու ։
Բիղա բաշա խան , Թահթա գալէ ։
Բուշուխի էֆէնտի խան , Մէրճան չարշը ։
Բուպիյէ խան , Քիւրքճիլէր պաշը ։

Փաշա խան , Ղալաթիա , Կամուրջին գլուխը ։
Փարթալ բաշա խան , Ցինճանճըլար ։
Փափագ օղլու խան , Սամա ալթը ։
Փէշտըմալճը խան , Ղալաթիա , Մաքսատան մօտ ։
» » երկու հատ քովէ քով , Էթմէյտանը եօգուշու ։
Փէրտահճը խան , Տիւլպէնտճիլէր փողոց , Շ ։

Քեարկիր խան , Զուգուր չէշմէ ։
Քէշմակճը օղլու խան , Մարխուճճուլար ։
Քէլլէ քէսէն խան , Զամբըրճըլար , Շ ։
Քէհրիպարճը խան , Ուզուն չարշը պաշը , Թօմպագճըլար ։
Քէպապճը խան , Թահթա գալէ , Տէքէրճի փողոց ։
Քէպապճը խան , Քիւրքճիլէր չարշըսը ։
Քէպէճի խան , Խօրխուճիւլէր , Շ ։
Քէրփիճ խան , Գալփագճըլար պաշը , Ըրկատ բազար ։

Քէօմիւրճիւ խան, Ղալաթիա, Բէրշէմպէ։
Քիլիսէ խան, Թավուք բազար, Եէսիր բազարը։
Քիլիտ խան, Ուզուն չարշը։
» » Պահչէ գաբու, Աշըր էֆէնտի խանին դիմաց։
Քիւրքճի խան, Մահմուտ բաշա։
Քօմիսիօն խան, Ղալաթիա, կամուրջին գլուխը։

Ֆընտըգլեան խան, Եէնի ճամի, Զինչէք բազարը։
Ֆինճանճը խան, Ֆինճանճըլար եօգուշու։



# ՀԵՂԻՆԱԿԻՆ ԳՈՐԾԵՐԸ

ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ Կ. ՊՈԼՍՈՅ եւ իւր շրջակայից, յատակագիծ պատկերով Վոսփորի . . . . 100 Փրյ.

ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ Նախապատրաստական Դասագիրք. Բնական, Ուսումնական եւ Քաղաքական։ Բ. տպագրութիւն հիմնովին բարեփոխեալ եւ ճոխացեալ . . . . . . . . . . . . 3 Ղրշ.

ԹՈՒԱԳԻՏՈՒԹԵԱՆ Նոր Դասագիրք [մտաւոր եւ գրաւոր] . եւ Բ. տարիներու համար։ Գ. տպագրութիւն բարեփոխեալ եւ յաւելեալ 3 Ղրշ.

ԹՈՒԱԳԻՏՈՒԹԵԱՆ Նոր Դասագիրք Գ. տարւոյ համար . . . . . . . . . . . 3 Ղրշ.

ԹՈՒԱԳԻՏՈՒԹԵԱՆ Նոր Դասագիրք Նախապատրաստական կարգաց համար։ [Վերոյիշեալ երկու դասագրքերը միասին կազմուած] . . . 5 Ղրշ

ԹՈՒԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՔ. Լրացուցիչ մասն՝ Գ. տարւոյ Թուագիտութեան . . . . . 2 Ղրշ.

ԹՈՒԱԳԻՏՈՒԹԵԱՆ Նոր Դասագիրք Դ. տարւոյ համար։ [Հրատարակելի]

ԵՐԱԳԻ[illegible]ՈՒԹԵԱՆ Նոր Դասագիրք։ [Հրատարակելի]։

*Սոյն Ընթացքին լրացուցիչ մասերը հետզհետէ պիտի հրատարակուին։*

Հրամանաւ Մէարիֆի